Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 7 ԱՊՐԻԼ 1953

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78*



# ՄԱՅԻՍԻ ՄԵԿԸ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏՈՆՆ Է

*Մայիսի մեկը աշխատավորների համերաշխության և բոլոր երկրների բանվորների եղբայրության միջազգային օրն է։ Ամբողջ աշխարհի աշխատավորությունը Մայիսի մեկի օրը ցուցադրում է իր միասնությունը, համախմբվածությունը և անընկճելի կամքը՝ խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարում։ Ընկեր Ստալինը «Կեցցե՛ Մայիսի մեկը» հոդվածում աշխատավորության միջազգային համերաշխության և եղբայրական համագործակցության տոնի մասին գրել է.*

*«Դեռ անցյալ դարում բոլոր երկրների բանվորները որոշեցին ամեն տարի տոնել այսօրվա օրը՝ Մայիսի մեկի օրը։ Այդ 1889 թվականին էր, երբ բոլոր երկրների սոցիալիստների Փարիզի կոնգրեսում բանվորները որոշեցին հատկապես այսօր, Մայիսի մեկի*

օրը, երբ բնությունն արթնանում է ձմեռային քնից, անտառներն ու լեռները ծածկվում են կանաչով, դաշտերն ու մարգագետինները զարդարվում են ծաղիկներով, արեգակն սկսում է ավելի ջերմորեն տաքացնել, օդի մեջ զգացվում է վերակենդանացման բերկրանքը, իսկ բնությունն անձնատուր է լինում պարի ու ցնծության,— նրանք որոշեցին հատկապես այսօր հայտարարել ամբողջ աշխարհին բարձրաձայն ու բացահայտորեն, որ բանվորները մարդկությանը բերում են գարուն և ազատագրություն կապիտալիզմի կապանքներից, որ բանվորները կոչված են նորոգելու աշխարհը ազատության ու սոցիալիզմի հիմունքով» (Ի. Ստալին, Երկեր, հ. 2, էջ 257)։

Սովետական Միության աշխատավորները այս տարի Մայիսի մեկը տոնում են կոմունիստական շինարարության գործում ձեռք բերած վիթխարի հաջողություններով, սոցիալիստական Հայրենիքի տնտեսական, քաղաքական հզորության աննախընթաց աճի պայմաններում։

1952 թվին Սովետական Միության ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում հաջողությամբ կատարվեցին և գերակատարվեցին հինգերորդ հնգամյակի երկ-



րորդ տարվա պլանները։ Ստալինյան նոր հնգամյակի երկրորդ տարում ՍՍՌՄ-ի արդյունաբերությունը, ամբողջությամբ վերցրած, համախառն արտադրանքի պլանը կատարել է 101 տոկոսով, 1951 թվականի համեմատությամբ տալով 11 տոկոսի աճ։

Սովետական մեքենաշինությունը 1952 թ. ընթացքում ստեղծել է 600 նոր տիպի կատարյալ մեքենաներ և մեխանիզմներ, որոնք ապահովում են ժողովրդական տնտեսության հետագա տեխնիկական պրոգրեսը։ Մեր երկիրը 1952 թվականին մեքենաներ և սարքավորումներ արտադրել է երեք անգամ ավելի, քան նախապատերազմյան 1940 թվականին, շատ ավելի, քան արտադրված է եղել առաջին և երկրորդ հնգամյակների ընթացքում միասին վերցրած։

Սովետական իշխանության գոյության ընթացքում մեր երկիրը արդյունաբերական այնպիսի պրոգրես է ձեռք բերել, որին հասնելու համար կապիտալիստական երկրներին պետք կլինեին հարյուրամյակներ։ Եթե ՍՍՌՄ-ն 35 տարիների ընթացքում իր արդյունաբերական արտադրությունը ավելացրել է 39 անգամ, ապա արդյունաբերական արտադրությունը նույնքան անգամ ավելացնելու համար Անգլիային պետք եղավ 162

տարի։ Ամերիկայի Միացյալ Նահանգներում, վերջին 35 տարվա ընթացքում արդյունաբերական արտադրանքի արտադրությունը ավելացել է միայն 2,6 անգամ։

Սովետական Միությունը ներկայումս արտադրում է ավելի շատ չուգուն և պողպատ, քան Անգլիան, Ֆրանսիան և Բելգիան՝ միասին վերցրած, ավելի շատ ածուխ է արդյունահանում և էլեկտրաէներգիա արտադրում, քան Անգլիան և Ֆրանսիան՝ միասին վերցրած, շատ ավելի բամբակյա գործվածքներ և կաշվե կոշիկներ է արտադրում, քան Անգլիան և Ֆրանսիան՝ միասին վերցրած։ Մեր ծանր արդյունաբերությունը 1952 թվականի յուրաքանչյուր 9 օրում տալիս էր այնքան արտադրանք, որքան ցարական Ռուսաստանն արտադրում էր մի ամբողջ տարվա ընթացքում։ Մեր երկիրը դարձել է էլեկտրաէներգիայի խոշոր արտադրության երկիր, իրականություն է դառնում անմահ Լենինի պատգամը՝ «Կոմունիզմը սովետական իշխանությունն է պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիան»։

Սոցիալիստական արդյունաբերության նոր, է՛լ ավելի հզոր վերելք է տեղի ունենում ստալինյան հինգերորդ հնգամյակում։ 1955 թվականին արդյունաբերական արտադրու-



թյան մակարդակը նախատեսվում է 1950 թվականի համեմատությամբ բարձրացնել մոտավորապես 70 տոկոսով։ ՍՍՌՄ արդյունաբերության արտադրանքի ծավալը հնգամյակի վերջում նախապատերազմյան մակարդակը կգերազանցի 3 անգամ։

Նոր հնգամյակի վիթխարի խնդիրների կատարման համար երկրում լայնորեն ծավալվել է համաժողովրդական սոցիալիստական մրցությունը։ Սոցիալիստական մրցության առաջավորներ Պ. Բիկովը և Ի. Սոմովը մեքենաշինության բնագավառում, Վ. Կուչերը, Է. Ստարոդուբցեը՝ ածխարդյունաբերության մեջ, Ա. Չուտկիխը՝ թեթև արդյունաբերության մեջ հասել են մեծ հաջողությունների։

Սոցիալիստական մրցության բնագավառում ձեռք բերված հաջողությունների, սովետական մարդկանց հայրենասիրական սխրագործությունների մասին է վկայում այն փաստը, որ միայն հետպատերազմյան տարիներին ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրվել են ավելի քան մեկ միլիոն 346 հազար բանվորներ, կոլտնտեսականներ, գիտնականներ, ինժեներա-տեխնիկական աշխատողներ, ծառայողներ, բժիշկներ, ուսուցիչներ և այլ աշխատողներ։

Սովետական ժողովուրդը մեծագույն հա-

չողությունների է հասել սոցիալիստական գյուղատնտեսության բնագավառում։ Գյուղատնտեսության բոլոր կուլտուրաների ցանքատարածությունները 1952 թվականին նախապատերազմյան մակարդակը գերազանցեցին 5,3 միլիոն հեկտարով։ 1952 թվականին մեր երկրի գյուղատնտեսությունը ստացավ 131 հազար տրակտոր՝ 15 ուժանոցի փոխադրած, 41 հազար հացահատիկային կոմբայն, 57 հազար բեռնատար ավտոմեքենա և ավելի քան 2 միլիոն գյուղատնտեսական այլ մեքենաներ ու գործիքներ։ Գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման բարձր մակարդակը և հողագործության կուլտուրայի աճումը լայն հնարավորություն ստեղծեցին արտադրելու այնպիսի քանակությամբ հացահատիկ, որպիսին մեր երկիրը չէր տեսել անցյալում։

1952 թվականին հացահատիկի համախառն բերքը կազմեց 8 միլիարդ փութ, ըստ որում պարենային կարևորագույն կուլտուրայի՝ ցորենի համախառն բերքը, 1940 թվականի համեմատությամբ, ավելացավ 48 տոկոսով։ Ընկեր Մալենկովը Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարում հայտարարեց. «Այսպիսով, հացահատիկային պրոբլեմը, որ առաջ համարվում էր ամենասուր և ամենա-



լուրջ պրոբլեմը, լուծված է հաջողությամբ, լուծված է վերջնականապես և անվերադարձ կերպով»։

Ներկայումս մեր երկիրն արտադրում է ավելի շատ ցորեն, քան ԱՄՆ-ը, Կանադան, Արգենտինան և ցորենի արտադրությամբ հայտնի մյուս կապիտալիստական գլխավոր երկրները, ինչպես նաև ավելի շատ բամբակ է արտադրում, քան բամբակագործությամբ հայտնի Հնդկաստանը, Պակիստանն ու Եգիպտոսը՝ միասին վերցրած։

Ներկայումս Սովետական Միությունը զգալիորեն ավելի շատ ճակնդեղաշաքար է արտադրում, քան ԱՄՆ-ը, Անգլիան և Ֆրանսիան՝ միասին վերցրած։

Խոշոր հաջողություններ է ձեռք բերված սոցիալիստական անասնաբուծության բնագավառում։ 1945 թվականի հուլիսից մինչև 1952 թվականի հուլիսն ընկած ժամանակաշրջանում Սովետական Միությունում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն աճել է 13,4 միլիոն գլխով, ոչխարներինը՝ 41,8 միլիոն գլխով, խոզերինը՝ 21,2 միլիոն գլխով և ձիերինը՝ 5,6 միլիոն գլխով։

Սոցիալիստական գյուղատնտեսության վերելքի, բարձր և կայուն բերքն ապահովելու համար հսկայական նշանակություն ու-

նի բնության վերափոխման ստալինյան պլանը, որը մեծ հաջողությամբ իրագործվում է: Վերջին երեք ու կես տարվա ընթացքում մեր երկրում 2 միլիոն 600 հազար հեկտար տարածության վրա տնկվել են դաշտապաշտպան անտառաշերտեր և կառուցվել են 12 հազարից ավելի լճակներ ու ջրամբարներ:

Սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման համար անսպառ հնարավորություններ են ստեղծվում հինգերորդ հնգամյակում: Հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը նոր հնգամյակում կավելանա 40—50 տոկոսով: Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը հնգամյակի ընթացքում ամբողջ գյուղատնտեսության մեջ ավելանալու է 18—20 տոկոսով, ոչխարներինը՝ 60—62 տոկոսով, խոզերինը՝ 45—50 տոկոսով:

Մեր երկրի ժողովրդական տնտեսության հետագա հզոր վերելքի համար խոշոր նշանակություն ունեն կոմունիզմի մեծ կառուցումները: Հաջողությամբ ավարտելով կոմունիզմի կառուցումների առաջնեկի՝ Վ. Ի. Լենինի անվան Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքի շինարարությունը, սովետական ժողովուրդը մեծ խանդավառությամբ իրակա-



նացնում է կոմունիզմի մյուս կառուցումների շինարարությունը:

Սովետական Միությունում ժողովրդական տնտեսության վիթխարի աճին ուղեկցում է աշխատավորների նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ բարելավումը:

Ընկեր Ստալինը «Սոցիալիզմի էկոնոմիկական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» աշխատության մեջ սովորեցնում է, որ սոցիալիստական արտադրության նպատակը ո՛չ թե շահույթն է, այլ մարդն իր պահանջմունքներով, ամբողջ հասարակության նյութական, կուլտուրական հարաճուն պահանջմունքների առավելագույն բավարարումը:

Սովետական ժողովրդի բարեկեցության աճի հիմնական ցուցանիշը ազգային եկամտի անընդհատ աճն է:

Լենինի—Ստալինի պարտիան, Սովետական կառավարությունը ժողովրդի բարեկեցության և երջանկության նկատմամբ, նրա նյութական, կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացման նկատմամբ հոգատարությունը միշտ համարել և համարում են իրենց գլխավոր խնդիրը: Պարենային և արդյունաբերական ապրանքների պետական մանրածախ գների նոր, թվով վեցերորդ իջեցումը վկայում է, որ անշեղորեն կենսագործվում է

ՍՍՌՄ աշխատավորների կենսամակարդակի հզոր վերելքի ծրագիրը, որը հաստատվել է պարտիայի 19-րդ համագումարի կողմից։ Գների նոր իջեցման կարևոր առանձնահատկությունն այն է, որ նա տարածվում է պարենային ու արդյունաբերական լայն սպառման՝ բոլոր ապրանքների վրա։ Գների նոր իջեցման հետևանքով մեր երկրի բնակչության օգուտը կազմում է 53 միլիարդ ռուբլի։

1952 թվականին Սովետական Միությունում և գլխավոր կապիտալիստական երկրներում կարևորագույն մթերքների գները 1947 թվականի համեմատությամբ հետևյալ պատկերն ունեն (1947 թվականի վերջը ընդունվում է 100)։

| | ՍՍՌՄ | ԱՄՆ | ԱՆԳԼԻԱ | ՖՐԱՆՍԻԱ |
|---|---|---|---|---|
| Հաց | 39 | 128 | 190 | 208 |
| Միս | 42 | 126 | 135 | 188 |
| Կարագ | 37 | 104 | 225 | 192 |
| Կաթ | 72 | 118 | 130 | 174 |
| Շաքար | 49 | 106 | 233 | 376 |

Աղյուսակից երևում է, որ 1947 թվականի համեմատությամբ 1952 թվականին հացի գները ԱՄՆ-ում բարձրացել են 28%-ով, Անգլիայում 90%-ով, Ֆրանսիայում ավելի



քան երկու անգամ։ Նույն ժամանակաշրջանում ՍՍՌՄ-ում հացի գները իջել են 2,5 անգամ և այլն։

1953 թվականի մարտի 9-ին, Կարմիր հրապարակում տեղի ունեցած սգո միտինգում արտասանած ճառում ընկեր Գ. Մ. Մալենկովն ասաց. «Ներքին քաղաքականության ասպարեզում մեր գլխավոր հոգատարության առարկան է անշեղորեն հասնել բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի, բոլոր սովետական մարդկանց նյութական բարեկեցության հետագա բարելավմանը։ Մեր պարտիայի ու կառավարության համար օրենք է հանդիսանում ժողովրդի բարօրության, նրա նյութական ու կուլտուրական պահանջմունքների առավելագույն բավարարման նկատմամբ անդուլ հոգատարություն ցուցաբերելու պարտականությունը»։

Բացառիկ արագ է աճում կուլտուրական շինարարությունը Սովետական Միությունում։ Աշխարհի ոչ մի երկրում չկա դպրոցների, տեխնիկումների, բարձրագույն ուսումնական հաստատությունների, գիտահետազոտական հիմնարկների այնպիսի լայն ցանց, ինչպես մեր երկրում։ Ներկայումս ՍՍՌՄ-ում սովորողների ընդհանուր թիվը կազմում է 57

միլիոն մարդ, այն ժամանակ, երբ ցարական Ռուսաստանում 1914 թվականին սովորողների ընդհանուր թիվը հազիվ հասնում էր 8 միլիոն մարդու։

Այժմ Սովետական Միության բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում է մեկ միլիոն 400 հազար մարդ, որը մեկ ու կես անգամ գերազանցում է Եվրոպայի բոլոր կապիտալիստական երկրների բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորողների ընդհանուր թվից։

Պարտիան և կառավարությունը ամենօրյա հոգատարություն են ցուցաբերում սովետական գիտության զարգացման նկատմամբ։ Սովետական գիտության կարևորագույն նվաճումը հետպատերազմյան շրջանում հանդիսանում է ատոմային էներգիայի արտադրության մեթոդների հայտնագործումը։ Գիտա-հետազոտական ինստիտուտների, լաբորատորիաների և գիտական այլ հիմնարկների թիվը 1939 թվականին եղած 1.560-ից ավելացավ՝ 1952 թվականի սկզբին հասավ 2.900-ի, իսկ գիտական աշխատողների թիվը այդ ժամանակամիջոցում ավելացել է համարյա 2 անգամ։ Միայն ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայում մինչռևոլուցիոն ժամանակի համեմատությամբ, գիտական



աշխատողների թիվն ավելացել է համարյա 60 անգամ, իսկ նրա բյուջեն՝ 700 անգամ։

Ընկեր Մալենկովը պարտիայի 19-րդ համագումարում իր զեկուցման մեջ ասաց, որ անհրաժեշտ է «է՛լ ավելի զարգացնել առաջավոր սովետական գիտությունը՝ խնդիր ունենալով առաջին տեղը գրավելու համաշխարհային գիտության մեջ»։

Սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում մայիսմեկյան տոնը նոր հաջողություններով է դիմավորում նաև Սովետական Հայաստանի աշխատավորությունը։

Սովետական Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքը 1952 թվականին, նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ, աճեց 4,2 անգամ, իսկ ծանր արդյունաբերության արտադրանքն այդ նույն ժամանակաշրջանում աճեց 4,6 անգամ, թեթև արդյունաբերության արտադրանքն ավելացավ 4,1 անգամ։ Մեր ռեսպուբլիկայի ձեռնարկությունները 1952 թվականին թողարկում էին 65 անգամ ավելի շատ արտադրանք, քան թողարկվել է Հայաստանում 1913 թվականին։

Սովետական Հայաստանի էլեկտրակայանները ներկայումս մի քանի օրում արտադրում են ավելի շատ էլեկտրաէներգիա, քան Հա-

յաստանում արտադրվել է 1913 թվականին՝ մի ամբողջ տարվա ընթացքում։ Գյումուշի հզոր հիդրոէլեկտրակայանի գործարկմամբ, մեր ռեսպուբլիկայի էլեկտրակայանների կարողությունը կավելանա 2,3 անգամ։

Աչքի ընկնող հաջողություններ է ձեռք բերել նաև մեր ռեսպուբլիկայի սոցիալիստական գյուղատնտեսությունը։ 1952 թվականին ընդհանուր ցանքատարածությունները, 1950 թվականի համեմատությամբ, աճեցին 18 տոկոսով։ Հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունը 1951—1952 թ. թ. աճեց 26,6 տոկոսով, իսկ ցորենինը՝ 49,8 տոկոսով։ Հաջողությամբ կատարվեց ռեսպուբլիկայի անասնաբուծության զարգացման եռամյա պլանը։

Բուռն վերելք է ապրում մեր ռեսպուբլիկան կուլտուրական շինարարության բնագավառում։ Սովետական Հայաստանը ծածկվել է կուլտուր-լուսավորական հիմնարկների խիտ ցանցով։ Այժմ Հայաստանում կան մոտ 2 հազար ակումբներ և 1.500 գրադարան։ Մեծ են հաջողությունները առողջապահության ասպարեզում։ Մեր ռեսպուբլիկայում յուրաքանչյուր 483 մարդուն ընկնում է մեկ բժիշկ, այն ժամանակ, երբ Ֆրանսիայում մեկ բժիշկ ընկնում է 1000 մարդուն, Հո-



լանդիայում՝ 1.160 մարդուն, իսկ Եգիպտոսում 4.350 մարդուն։

Մեծ են ժողովրդական կրթության բնագավառում ձեռք բերած հաջողությունները։ Ներկայումս Սովետական Հայաստանում կա 1.169 դպրոց, որտեղ սովորում են 300 հազար աշակերտ։

***

Աշխատավորների միջազգային ասպարեզում նշանավորվում է Սովետական Միության միջազգային հեղինակության աճման, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի լագերի է՛լ ավելի ամրապնդման պայմաններում։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարում արտասանած ճառում ընկեր Ստալինը ասաց, որ «Այժմ դրությունը միանգամայն այլ է։ Այժմ, երբ Չինաստանից ու Կորեայից մինչև Չեխոսլովակիա ու Հունգարիա երևան են եկել նոր «Հարվածային բրիգադաներ» ի դեմս ժողովրդա-դեմոկրատական երկրների, այժմ մեր պարտիայի համար ավելի է հեշտացել պայքարելը և գործն էլ ավելի լավ է գնում»։

Խաղաղության և դեմոկրատիայի լագերում եղբայրական սերտ միասնությամբ սովետական ժողովրդի հետ միասին առաջ են ընթա-

նում չին մեծ ժողովուրդը, Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Բուլղարիայի, Հունգարիայի, Ռումինիայի, Ալբանիայի, Գերմանական Դեմոկրատական ռեսպուբլիկայի, Մոնղոլական ժողովրդական ռեսպուբլիկայի ժողովուրդները։

Իրենց երկրներում ազատ ու երջանիկ կյանք կերտելու գործում խոշոր հաջողությունների են հասել ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները։ Միայն 1952 թվականին Եվրոպայի ժողովրդա-դեմոկրատական երկրներում արդյունաբերական արտադրանքն ավելացավ 20 տոկոսով։ Այդ նույն ժամանակ Եվրոպայի կապիտալիստական երկրներում՝ Ֆրանսիայում, Բելգիայում, Ավստրիայում, Հոլանդիայում, Հունաստանում և Լյուքսեմբուրգում արտադրության աճը կազմեց միայն 0,8 տոկոս։ Այսպիսով, 1952 թվականին արդյունաբերության զարգացման տեմպերը Եվրոպայի ժողովրդական դեմոկրատիայի երկրներում շատ ավելի բարձր էին, քան Արևմտյան Եվրոպայի կապիտալիստական երկրներում։ Սոցիալիզմի շինարարության ուղիով ընթացող Եվրոպայի ժողովրդական դեմոկրատիայի երկրներում արդյունաբերական արտադրանքի ծավալը անցած տարվա վերջին



նախապատերազմյան մակարդակը գերազանցեց 3 անգամ։

Քաղաքական, տնտեսական և կուլտուրական շինարարության գործում մեծ հաջողություններ է ձեռք բերել չին մեծ ժողովուրդը։ Վերջին 3 տարվա ընթացքում Չինաստանի արդյունաբերության արտադրանքի ծավալը ավելացել է ավելի քան 2 անգամ։ Գյուղատնտեսական արտադրությունը գերազանցել է նախապատերազմյան մակարդակը։ 1953 թվականից սկսել է իրագործվել Չինաստանի ժողովրդական տնտեսության շինարարության առաջին հնգամյա պլանը։

Սովետական Միության ամենօրյա օգնությունը ժողովրդական դեմոկրատիայի երկրներին, խաղաղության ճամբարի բոլոր երկրների տնտեսական համագործակցությունըն ապահովում են այդ երկրների էկոնոմիկայի և կուլտուրայի բուռն վերելքը, աշխատավորների նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացումը։ Ընկեր Ստալինը մատնանշում է. «...ոչ մի կապիտալիստական երկիր չէր կարող այնպիսի իրական և տեխնիկական որակյալ օգնություն ցույց տալ ժողովրդա-դեմոկրատական երկրներին, որպիսին նրան ցույց է տալիս Սովետական Միությունը։ Բանը ոչ միայն

այն է, որ այդ օգնությունը առավել էժան և տեխնիկապես առաջնակարգ օգնություն է։ Բանն ամենից առաջ այն է, որ այդ համագործակցության հիմքում դրված է մեկը մյուսին օգնելու և ընդհանուր տնտեսական վերելք ձեռք բերելու անկեղծ ցանկությունը» (Ի. Ստալին, «Սոցիալիզմի էկոնոմիկական պրոբլեմները ՍՍՌՄ-ում», էջ 34)։ Խաղաղության և դեմոկրատիայի լագերը հանդիսանում է միասնական և անխորտակելի մեծ ուժ։ Աճում և ամրապնդվում է սոցիալիզմի լագերի երկրների տնտեսական և քաղաքական հզորությունը, որը հանդիսանում է խաղաղության պաշտպանության և ժողովուրդների միջև ամուր բարեկամության հուսալի երաշխիքը։

«Մեր սրբազան պարտականությունն է,— նշում է ընկեր Մալենկովը,— պահպանել և ամրապնդել ժողովուրդների մեծագույն նվաճումը՝ խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի լագերը, ամրապնդել դեմոկրատական լագերի երկրների ժողովուրդների բարեկամության ու համերաշխության կապերը։ Մենք պետք է ամեն կերպ ամրապնդենք Սովետական Միության հավերժ անխախտ եղբայրական բարեկամությունը չին մեծ ժողովրդի հետ, ժողովրդական դեմոկրա-



տիայի բոլոր երկրների աշխատավորների հետ»։

***

Մայիսի մեկը կապիտալիստական երկրների աշխատավորները նշում են կապիտալի կողմից բանվորների կենսամակարդակի և դեմոկրատական իրավունքների վրա նոր հարձակման դեմ իրենց շարքերի միասնությամբ և պայքարի ուժեղացմամբ։

Այն ժամանակ, երբ Սովետական Միությունը և ժողովրդական դեմոկրատիայի երկրները ընթանում են խաղաղ, ստեղծագործական շինարարության, ժողովուրդների նյութական դրության անշեղ բարձրացման ուղիով, իմպերիալիզմի լագերի բոլոր երկրների էկոնոմիկան կազմալուծվում է կապիտալիզմի ավելի ու ավելի խորացող ընդհանուր ճգնաժամի և շարունակ կրկնվող տնտեսական ճգնաժամերի ճիրաններում։ Կապիտալի բոլոր երկրներում տեղի է ունենում էկոնոմիկայի միլիտարիզացիա և աշխատավորության կյանքի պայմանների անընդհատ վատթարացում։ Ժամանակակից կապիտալիզմի հիմնական էկոնոմիկական օրենքի գլխավոր գծերն ու պահանջները, ինչպես սովորեցնում է ընկեր Ստալինը, հանդի-

սանում են՝ «Կապիտալիստական առավելագույն շահույթի ապահովում՝ տվյալ երկրի բնակչության մեծամասնության շահագործման, քայքայման ու աղքատացման միջոցով, ուրիշ երկրների, հատկապես հետամնաց երկրների ժողովուրդների ստրկացման ու սիստեմատիկ կողոպտման միջոցով, վերջապես պատերազմների և ժողովրդական տնտեսության ռազմականացման միջոցով, որոնք օգտագործվում են ամենաբարձր շահույթներ ապահովելու համար»։

1952—1953 բյուջետային տարում ԱՄՆ-ի ռազմական ծախսերի տեսակարար կշիռը 1937—1938 բյուջետային տարվա 14 տոկոսից աճեց և հասավ 74 տոկոսի։ Անգլիայի ռազմական ծախսերը, նախապատերազմյան ժամանակաշրջանի համեմատությամբ, 17 տոկոսից աճեցին՝ հասնելով 34 տոկոսի։ Իմպերիալիստական երկրների կառավարող շրջանները ռազմական ծախսերի ամբողջ բեռը բարդել են աշխատավոր ժողովրդի ուսերին։

Կապիտալիստական երկրների աշխատավորների կյանքի պայմանների անընդհատ վատթարացման հետ միաժամանակ հսկայական չափով աճում են կապիտալիստական մոնոպոլիստների շահույթները։ Վերջին երկու և կես տարվա ընթացքում ամերիկյան կորպորացիաների շահույթները առանց հարկերի կազմեցին 107 միլիարդ դոլար, որը հավասար է երկրորդ համաշխարհային պատերազմի 5 տարվա ընթացքում ստացված շահույթների գումարին։ Անգլիայի խոշոր կապիտալիստական կոմպանիաների շահույթները 1952 թվականին հասան մինչև 3.680 միլիոն ֆունտ ստերլինգի (1947 թ. 3.100 միլիոն ֆունտ ստերլինգի դիմաց)։



Կապիտալի երկրներում աճում է գործազրկությունը։ ԱՄՆ-ում կան ոչ պակաս 3 միլիոն լրիվ և 10 միլիոն մասնակի գործազուրկներ, Յապոնիայում կան մոտ 10 միլիոն լրիվ և մասնակի գործազուրկներ, Արևմտյան Գերմանիայում կան համարյա 3 միլիոն լրիվ և մասնակի գործազուրկներ։ Միայն ԱՄՆ-ում, Յապոնիայում, Անգլիայում, Իտալիայում, Բելգիայում և Արևմտյան Գերմանիայում՝ միասին վերցրած, լրիվ և մասնակի գործազուրկների թիվը հասնում է 32 միլիոն մարդու։

Կապիտալիստական երկրներում բնակարանային շինարարությունը վերջին տարիներին գրեթե ընդհատվել է։ ԱՄՆ-ում 10 միլիոն մարդ ապրում է բնակարանային ծանր

պայմաններում, իսկ Հոլլանդիայում՝ ավելի քան 2 միլիոն մարդ բնակարան չունի։

Աշխատավորների կենսամակարդակի վրա կապիտալիստների հարձակումը հանդիպում է ժողովրդական մասսաների վճռական հակահարվածին։ Իմպերիալիզմի լագերի երկրներում մեծ ծավալ է ստացել գործադուլային շարժումը։ Միայն անցած տարվա 9 ամիսների ընթացքում ԱՄՆ-ում գործադուլ են արել 3 միլիոն 560 հազար աշխատավորներ։ Անգլիայում միայն 1952 թվականի 8 ամիսների ընթացքում երկու անգամ շատ գործադուլներ են եղել, քան նախապատերազմյան տարիներին։

Վիթխարի թափով ծավալվում է գաղութային ու կախյալ երկրների ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը և նրանց պայքարը գաղութային ստրկացման ու կողոպտման իմպերիալիստական քաղաքականության դեմ։

Խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարը կապիտալի բոլոր երկրներում գլխավորում են կոմունիստական և բանվորական պարտիաները, որոնց ուղին լուսավորում է պայքարի և հաղթանակների մեծ ծրագիր հանդիսացող ընկեր



Ստալինի պատմական ճառը ՍՄԿՊ 19-րդ համագումարում։

Պայքարելով դեմոկրատական ազատությունների, ազգային անկախության և խաղաղության համար՝ կապիտալիստական երկրների աշխատավորներն իրենց հայացքներն ուղղում են համաշխարհային ռևոլյուցիոն և բանվորական շարժման առաջին «Հարվածային բրիգադային»— Սովետական Միությանը։ Սովետական Միության նկատմամբ նվիրվածություն, վստահություն, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և բոլոր երկրների աշխատավորների միջազգային համագործակցության վառ ցուցադրում հանդիսացավ ՍՄԿՊ 19-րդ համագումարը։

Ղեկավարվելով ընկեր Ստալինի իմաստուն ցուցումներով, Սովետական Միության Կոմունիստական պարտիան է՛լ ավելի է ամրապնդում բարեկամությունը սովետական ժողովրդի և կապիտալիստական ու գաղութային երկրների ժողովուրդների միջև։ Ընկ. Լ. Պ. Բերիան մարտի 9-ին արտասանած իր ճառում ասաց. «Արտասահմանի մեր եղբայրներն ու բարեկամները կարող են համոզված լինել, որ Կոմունիստական պարտիան և Սովետական Միության ժողովուրդները՝ հավատարիմ պրոլետարական ինտեր-

նացիոնալիզմի դրոշին, Լենինի—Ստալինի դրոշին, հետագայում ևս կամրապնդեն ու կզարգացնեն բարեկամական կապերը կապիտալիստական ու գաղութային երկրների աշխատավորների հետ, որոնք պայքարում են խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի գործի համար»։

Կապիտալիստական աշխարհի բանվոր դասակարգի մեջ, բոլոր հասարակ մարդկանց մեջ ավելի ու ավելի է խորանում այն ըմբռնումը, որ տնտեսական պահանջների համար, աշխատավարձի բարձրացման, իրենց կենսապայմանների բարելավման համար մղվող պայքարը անբաժանելի է խաղաղության համար, պատերազմի իմպերիալիստական հրձիգների դեմ մղվող պայքարից։ Ամերիկա-անգլիական իմպերիալիստների կողմից նախապատրաստվող նոր համաշխարհային պատերազմը կանխելու համար ծավալված խաղաղության պաշտպանության շարժումը քանի գնում ավելի հզոր է դառնում։ Անցած տարվա դեկտեմբերին Վիեննայում տեղի ունեցած խաղաղության պաշտպանության ժողովուրդների կոնգրեսը ամենավառ կերպով ցուցադրեց խաղաղության պաշտպանների համաշխարհային ճակատի հզոր ուժը։



Խաղաղության և ժողովուրդների անվտանգության պաշտպանության գործը գլխավորում է Սովետական Միությունը։

Արտահայտելով ամբողջ սովետական ժողովրդի կամքը, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ ընկ. Գ. Մ. Մալենկովը ՍՍՌՄ Գերագույն Սովետի 4-րդ սեսիայում արտասանած ճառում ասաց. «Ներկայումս չկա այնպիսի վիճելի կամ չլուծված հարց, որը կարելի չլիներ լուծել խաղաղ ճանապարհով՝ շահագրգռված երկրների փոխադարձ պայմանավորվածության հիման վրա։ Դա վերաբերում է մեր հարաբերություններին բոլոր պետությունների հետ, այդ թվում նաև մեր հարաբերություններին Ամերիկայի Միացյալ Նահանգների հետ։ Խաղաղությունը պահպանելու գործում շահագրգռված պետությունները կարող են ինչպես ներկայումս, այնպես էլ ապագայում համոզված լինել Սովետական Միության կայուն խաղաղ քաղաքականության մեջ»։

Կորեական հարցի վերաբերյալ ՍՍՌՄ արտաքին գործերի մինիստր ընկ. Վ. Մ. Մոլոտովի արած հայտարարությունը մի անգամ ևս վկայում է, որ Սովետական Միությունը անշեղորեն պաշտպանում է Կորեայում արդարացի զինադադար հաստատելու, պատե-

բազմը դադարեցնելու և ամբողջ աշխարհում խաղաղության պաշտպանության նպատակին ուղղված բոլոր քայլերը։

Սովետական Միությունը անշեղորեն վարելով խաղաղությունը պաշտպանելու քաղաքականություն, միևնույն ժամանակ հաշվի է առնում նոր ագրեսիայի սպառնալիքի առկայությունը պատերազմի ամերիկա-անգլիական հրձիգների կողմից։ Ուստի մեր երկիրը անշեղորեն ամրապնդում է և կամրապնդի իր պաշտպանունակությունը։

Սովետական ժողովուրդը և Կոմունիստական պարտիան ղեկավարվում են ընկեր Ստալինի այն ցուցումով, որ «Մեր խնդիրն է՝ առավելագույն զգոնություն ունենալ և անշալուրջ լինել։ Եվ եթե մենք զգոն լինենք, ընկերներ, մենք անպայման մեր թշնամիներին ապագայում ևս կջախջախենք այնպես, ինչպես նրանց ջախջախում ենք այժմ և ջախջախել ենք անցյալում» (Հ. 11, էջ 72)։

Սովետական Միությունը չի վախենում պատերազմի հրձիգների սպառնալիքներից։ Եթե իմպերիալիստները կատարեն նոր ագրեսիա և մարդկությանը քաշեն նոր համաշխարհային սպանդի մեջ, ապա վստահությամբ կարելի է ասել, որ դա կհանգեցնի միջազգային իմպերիալիզմի անխուսափելի



կործանմանը։ «Բոլոր հիմքերը կան կարծելու,— նշեց ընկեր Մալենկովը ՍՄԿԿ 19-րդ համագումարում,— որ երրորդ համաշխարհային պատերազմը առաջ կբերի կապիտալիստական համաշխարհային սիստեմի փլուզումը»։

***

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարը նոր և վիթխարի խնդիրներ է դրել պարտիայի և մեր ժողովրդի առջև՝ մեծ Լենինի կողմից սկսած և ընկեր Ստալինի կողմից հաջողությամբ շարունակած կոմունիզմի կառուցման մեծ գործը հաղթանակի հասցնելու համար։

Այդ խնդիրներն են՝ այսուհետև ևս անդուլ կերպով բազմակողմանիորեն ամրապնդել մեր մեծ սոցիալիստական պետությունը, որը հանդիսանում է մեր երկրում կոմունիզմի հաջող կառուցման կարևորագույն պայմանը։ Է՛լ ավելի զարգացնել սովետական մարդկանց քաղաքական ակտիվությունն ու հայրենասիրությունը։ Ամեն կերպ ամրապնդել մեր երկրի ժողովուրդների բարոյաքաղաքական միասնությունն ու եղբայրական բարեկամությունը։

Հավատարիմ պրոլետարական ինտերնա-

ցիոնալիզմի դրոշին՝ սովետական ժողովուրդը հետագայում ևս կամրապնդի ու կզարգացնի բարեկամական կապերը կապիտալիստական ու գաղութային երկրների աշխատավորների հետ, որոնք պայքարում են խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար։

Սովետական ժողովուրդը համախմբված Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և Սովետական կառավարության շուրջը, ծավալել է սոցիալիստական գործարար մրցություն ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում հինգերորդ հնգամյակի վիթխարի խնդիրները կատարելու և գերակատարելու համար։

Իր անսպառ ուժերի և հնարավորությունների նկատմամբ հաստատուն հավատով լի՝ սովետական ժողովուրդը իրագործում է կոմունիզմի կառուցման մեծ գործը։ Սովետական ժողովրդի հզոր, անսասան ու հուսալի պատվարը Կոմունիստական պարտիան է, նրա պողպատե միասնությունը, նրա անխզելի կապերը աշխատավորների հետ։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի 4-րդ սեսիան դարձյալ ցույց տվեց, որ սովետական ժողովուրդը անբաժան վստահություն է տածում և ջերմ



սիրով է տոգորված դեպի իր հարազատ Կոմունիստական պարտիան։

Զինված ՍՄԿՊ 19-րդ համագումարի պատմական որոշումներով, ընկեր Ստալինի «Սոցիալիզմի էկոնոմիկական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» աշխատության գաղափարներով, Սովետական Միության բոլոր ժողովուրդները եղբայրական համերաշխ ընտանիքով Կոմունիստական պարտիայի փորձված ղեկավարությամբ առաջ են ընթանում դեպի կոմունիզմի հաղթանակը մեր երկրում։

Գ. ԳՈՒԼԱՆՅԱՆ
ՍՏ. ՍՏԵՓԱՆՅԱՆ

---

# ԾԱՎԱԼԵՆՔ ՆԱԽԱՄԱՅԻՍՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆ

*Մեր մեծ երկրի աշխատավորներն ամեն տարի տրադիցիոն կերպով տոնում են Մայիսի մեկը, ամբողջ աշխարհի աշխատավորության համերաշխության և նրանց մարտական ուժերի ստուգատեսի օրը։*

*Սովետական ժողովուրդը և նրա օրինակով ժողովրդա-դեմոկրատական երկրների աշխատավորները մայիսմեկյան տոնը դիմավորում են քաղաքական և աշխատանքային վերելքի պայմաններում։ Բանվորները, ծառայողները, կոլտնտեսականները, գիտության և արվեստի աշխատողները մայիսմեկյան տոնը նշանավորում են անձնուրաց աշխատանքով, նրանք ուժ և եռանդ չեն խնայում իրենց սիրելի Հայրենիքի ծաղկման ու բարգավաճման համար։*

*Անձնուրաց աշխատանքի և Սովետական Հայրենիքին անսահմանորեն նվիրվածության փայլուն օրինակ է հանդիսանում նախամայիսյան սոցիալիստական մրցությունը,*



*որը, ինչպես և ամեն տարի, մայիսմեկյան մեծ տոնի նախօրյակին բուռն թափով ծավալվում է ամբողջ երկրում։*

*Ագիտկոլեկտիվների և բոլոր ագիտատորների առաջնահերթ խնդիրն է՝ ծավալել նախամայիսյան սոցիալիստական մրցությունը, այն դարձնել ավելի մասսայական, կոլեկտիվ մրցություն, որպեսզի մրցության մեջ ներգրավվեն ոչ միայն բոլոր բանվոր-ծառայողները, այլև ամբողջ ցեխեր, բրիգադներ, տեղամասեր և ձեռնարկություններ։*

*Նախամայիսյան սոցիալիստական մրցությունը հարկավոր է կազմակերպել այնպես, որ ընդգրկի արտադրության բոլոր հարցերը՝ սկսած աշխատանքի տեղի նախապատրաստումից, վերջացրած ամբողջ ձեռնարկության տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով։ Այդ գործում աշխատանքի ուսանելի փորձ ունի Երևանի Ավտոդողերի գործարանի ագիտկոլեկտիվը։ Այստեղ նախամայիսյան սոցիալիստական մրցություն է ծավալվում ոչ միայն պլանների կատարման ու գերակատարման համար, այլև արտադրանքի որակը բարձրացնելու, հումքը, նյութերը, էլեկտրաէներգիան տնտեսելու, արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու համար։ Ագիտկոլեկտիվի ղեկավար Օ. Գալաչյանը պարբե-*

*րաբար ամփոփում է մրցության արդյունքները, այն, թե ով մրցության միջոցով ինչպիսի հաջողությունների է հասել, իսկ ագիտատորները մրցության առաջավորների փորձը դարձնում են ագիտացիայի նյութ, պրոպագանդում այն և մասսայաբար խրախուսում առաջավորներին։*

*Նախամայիսյան սոցիալիստական մրցությունն ավելի գործարար ու արդյունավետ դարձնելու համար անհրաժեշտ է սիստեմատիկաբար պայքարել մրցության նկատմամբ ձևական մոտեցման երևույթների դեմ, երբ մրցության միջոցով ամենօրյա պայքար չի կազմակերպվում արտադրության որակական ցուցանիշները բարձրացնելու համար, երբ որոշ ձեռնարկություններում ագիտատորները բանվոր-ծառայողներին չեն օգնում մոբիլիզացնող պարտավորություններ ստանձնելու, այլ բավարարվում են տրաֆարետ պարտավորություններով, ինչպես, օրինակ, լինել կարգապահ, աշխատանքից չուշանալ, աշխատանքից չբացակայել և այլն։ Ուստի ագիտատորների խնդիրն է՝ ժամանակին բացահայտել և վերացնել սոցիալիստական մրցության գործում գոյություն ունեցող թերությունները, որովհետև, ինչպես սովորեցնում է ընկեր Ստալինը, «Չի կարելի սոցիալիստա-*



*կան մրցությունը դիտել, որպես գրասենյակային գործ։ Սոցիալիստական մրցությունը մասսաների՝ միլիոնավոր աշխատավորների ստեղծագործական* նախաձեռնության *վրա հենվող գործնական ռևոլյուցիոն* ինքնաքննադատության *արտահայտությունն է»։*

*Ընկեր Ստալինը սովորեցնում է, որ սոցիալիստական մրցության խնդիրն է՝ լայն ասպարեզ բանալ մասսաների եռանդն ու ստեղծագործական նախաձեռնությունը ծավալելու համար, հայտնաբերել մեր հասարակարգի ընդերքում թաքնված հսկայական ռեզերվները։*

*Որպեսզի մրցությունը լինի ավելի արդյունավետ, անհրաժեշտ է, որ ագիտատորները իրենց զրույցի ընթացքում միշտ մասսայականացնեն մրցության ընթացքը, պարզաբանեն, թե ով, ինչպես է կատարում ստանձնած պարտավորությունը։ Մրցության առաջավորների աշխատանքի դրական փորձը դարձնելով ագիտացիոն զրույցի նյութ, ագիտատորը պետք է ունկնդիրներին հանգամանորեն պատմի առաջավորների աշխատանքի այն մեթոդների ու ձևերի մասին, որոնց միջոցով նրանք հաղթող են եղել մրցության մեջ։ Խոսելով առաջավորների փորձի մասին, ագիտատորը պետք է կոնկրետ օրինակներով*

*ու փաստերով ցույց տա, թե ովքեր առաջավորը ինչպես է բարձրացրել աշխատանքի արտադրողականությունը, խնայել հումքն ու էլեկտրաէներգիան, բարելավել արտադրանքի որակը, կանխել խոտանը և այլն։*

*Սոցիալիստական մրցության արդյունքները պրոպագանդելու, մրցության առաջավորների փորձը մասսայականացնելու ուղղությամբ օրինակելի աշխատանք է կատարում Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի ագիտկոլեկտիվը։ Ագիտկոլեկտիվը պարտկազմակերպության ղեկավարությամբ ցուցադրական ագիտացիայի միջոցով սիստեմատիկաբար գործարանի կոլեկտիվին տեղյակ է պահում, թե գործարանում ով ինչպես է կատարում ստանձնած պարտավորությունները։ Գործարանի աչքի ընկնող տեղերում՝ մուտքի մոտ, ցեխերում փակցըված են մրցության առաջավորների գեղարվեստորեն ձևավորված ֆոտոնկարները և համառոտ տեղեկություններ նրանց ստանձնած պարտավորությունների կատարման մասին։ Գործարանում կան հատուկ պլակատներ, ցուցափեղկեր, ֆոտոմոնտաժներ, լոզունգներ, որոնք բանվորներին և ծառայողներին ոչ միայն տեղյակ են պահում մրցության ընթացքի մասին, այլև տարբեր*



*ձևերով կոչ են անում արտադրական պլանները կատարել ժամկետից շուտ և բարձր որակով։ Ցուցադրական այդ նյութերը միաժամանակ ագիտատորների համար լավագույն միջոց են բանվոր-ծառայողներին ծանոթացնելու մրցության առաջավորների աշխատանքի դրական փորձի հետ։*

*Նախամայիսյան սոցիալիստական մրցության խնդիրն է նաև՝ աշխատանքում հետ մնացողներին ընկերական օգնության միջոցով հասցնել առաջավորներին։*

*«Սոցիալիստական մրցության սկզբունքն է,— սովորեցնում է ընկեր Ստալինը,— առաջավորների ընկերական օգնությունը հետ մնացողներին այն հաշվով, որպեսզի ձեռք բերվի* ընդհանուր *վերելք»։*

*Այդ լավ է հասկացել Երևանի էլեկտրական ճշգրիտ գործիքների գործարանի ագիտկոլեկտիվը։ Այստեղ ագիտկոլեկտիվը պարտկազմակերպության ղեկավարությամբ հատուկ ուշադրություն է դարձնում հետ մընացողներին առաջավորներին հասցնելու վրա։ Այսպես, օրինակ, մեխանիկական ցեխում մի շարք երիտասարդ խառատներ, որոնց թվում Բ. Աճեմյանը և Լ. Ջարգարյանը, երկար ժամանակ թերակատարում էին արտադրական պլանները, չէին կարողանում*

կատարել արտադրանքի որակը բարձրացնելու վերաբերյալ սոցմրցության պայմանագրով ստանձնած պարտավորությունը և մանավանդ աշխատանքի տեխնիկային տիրապետելու գործում ետ էին մնում իրենց ընկերներից։ Ագիտատոր Հ. Գևորգյանը պարտկազմակերպության բյուրոյի և ագիտկոլեկտիվի հանձնարարությամբ հանգամանորեն զբաղվեց նրանց հարցով։ Ագիտատոր Հ. Գևորգյանը լինելով առաջավոր վարպետ, կարողանում է ոչ միայն ուժեղացնել քաղաքական աշխատանքը ցեխում, այլև հմտորեն պրոպագանդում է առաջավորների փորձը և այն արմատավորում արտադրության մեջ։ Նա սոցմրցության մեջ ետ մնացող Աճեմյանին և Զարգարյանին ծանոթացնում է իրենց ձեռնարկության առաջավորների փորձի հետ, մանրակրկիտ կերպով, առանց ժամանակ խնայելու, բացատրում է նրանց, թե մրցության առաջավորներն աշխատանքային ի՞նչ մեթոդներ ու ձևեր են կիրառում արտադրության պլանները գերակատարելու, արտադրանքի որակը բարձրացնելու համար, ինչպես են նրանք սիստեմատիկաբար բարձրացնում իրենց տեխնիկական պատրաստականությունը։ Այնուհետև ագիտատոր Հ. Գև-



վորգյանը երիտասարդ խառատներին ծանոթացնում է միութենական նույնատիպ գործարանների աշխատանքի առաջավորների փորձի հետ։ Ամեն անգամ հերթական զրույցից հետո ագիտատորը նրանց տալիս է առաջավորների աշխատանքի դրական փորձը լուսաբանող հատուկ բրոշյուրներ։ Այդ բրոշյուրները գործարանը հաճախակի ստանում է Մոսկվայից և Լենինգրադից։

Բացի այդ բոլորից ագիտատոր Հ. Գևորգյանը ետ մնացող խառատներ Աճեմյանին և Զարգարյանին աշխատանքից հետո մի քանի շաբաթվա ընթացքում պրակտիկ կերպով սովորեցրեց, թե ինչպես կարելի է բարձրորակ դետալներ պատրաստել։

Արտադրության մեջ ետ մնացողների հետ կատարվող նման խելացի ու մտածված աշխատանքը փայլուն արդյունք տվեց։ Այժմ խառատներ Բ. Աճեմյանը և Զարգարյանը դարձել են մրցության առաջավորներ, տիրապետում են աշխատանքի տեխնիկային և տալիս են բարձր որակի արտադրանք, նրանք արտադրական պլանները կատարում են 150—180 տոկոսով։

Նախամայիսյան սոցիալիստական մրցու-

թյունը պետք է ձեռնարկություններում խոշոր չափերով նպաստի արտադրության մեջ նոր տեխնիկայի արագ արմատավորմանը, մեքենաների ու սարքավորումների առավել արդյունավետ օգտագործմանը։

Նախամայիսյան սոցիալիստական մրցությունը համաժողովրդական գործ է, այն պետք է լինի պարտիական, պրոֆմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, բոլոր ագիտատորների ուշադրության կենտրոնում։

Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԱՆԸՆԴՀԱՏ ԱՃԸ

(ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ)

✪ *Սովետական Միության Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ներքին քաղաքականության ասպարեզում գլխավոր հոգատարության առարկան մշտապես եղել է և մնում է բոլոր սովետական մարդկանց նյութական բարեկեցության և կյանքի կուլտուրական մակարդակի անընդհատ բարելավումը, որի ցայտուն վկայությունն է ՍՍՌՄ ազգային եկամտի անընդհատ աճը։ 1951 թվականին ազգային եկամուտը 11 անգամ գերազանցեց 1913 թվականի մակարդակը։ 1940 թվականից մինչև 1952 թվականը, որի մեջ ընդգրկվում են նաև Հայրենական Մեծ պատերազմի տարիները, մեր երկրում ազգային եկամուտը կրկնապատկվեց։*

✪ *Մեր երկրում ազգային եկամուտը ամբողջովին պատկանում է աշխատավորությանը։ Ազգային եկամտի երեք քառորդը ստանում են բանվորները, ինտելիգենտները և գյուղացիները իրենց պահանջմունքները բավարարելու համար, իսկ մնացած մեկ քառորդը*

հատկացվում է սոցիալիստական արտադրությունն ընդլայնելու, սովետական պետության և ամբողջ հասարակության այլ կարիքների համար։

Եթե մեր երկրում ազգային եկամուտը պատկանում է աշխատավորությանը, ապա կապիտալիստական երկրներում նրա առյուծի բաժինը պատկանում է շահագործողներին։ Օրինակ, Անգլիայում 1950 թվականին բնակչության մեկ տասներորդ մասը կազմող ամենից հարուստ խավին բաժին էր ընկել ազգային եկամտի 34 տոկոսը, իսկ բնակչության 50 տոկոսը կազմող չքավոր խավին բաժին էր ընկել ազգային եկամտի միայն 21 տոկոսը։

✪ Հետպատերազմյան տարիներին Սովետական Միությունում սիստեմատիկաբար իջնում են պարենային և արդյունաբերական ապրանքների պետական մանրածախ գները, իսկ կապիտալիստական աշխարհում անընդհատ, բարձրանում են ապրանքների գները և իջնում աշխատավորների ռեալ եկամուտները։

1952 թվականի սեպտեմբերին, 1949 թվականի սեպտեմբերի համեմատությամբ, ապրանքների գները Ֆրանսիայում բարձրացել են 45 տոկոսով, Հունաստանում՝ 27 տոկոսով Հոլլանդիայում՝ 21 տոկոսով, Նորվեգիայում՝ 35 տոկոսով, Անգլիայում՝ 22 տոկոսով և այլն։

✪ 1947 թվականի դեկտեմբերին մեր երկրում անցկացվեց դրամական ռեֆորմ և վերացվեց պարենա-



յին ու արդյունաբերական ապրանքների քարտային սիստեմը, որի շնորհիվ միայն 1948 թվականին բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը, 1947 թվականի համեմատությամբ, ավելացավ ավելի քան երկու անգամ։

✪ 1949 թվականին գների երկրորդ իջեցումով է՛լ ավելի բարձրացավ սովետական մարդկանց բարեկեցությունը։ Պարենային ապրանքների վաճառքը 1949 թվականին, 1948 թվականի համեմատությամբ, ավելացավ 17 տոկոսով, իսկ արդյունաբերական ապրանքներինը՝ 25 տոկոսով։ Բանվորների և ծառայողների մեկ աշխատողին ընկնող ռեալ եկամուտները 1949 թվականին, 1948 թվականի համեմատությամբ, բարձրացան 12 տոկոսով, իսկ 1940 թվականի համեմատությամբ՝ 24 տոկոսով։ Գյուղացիների մեկ աշխատողին ընկնող ռեալ եկամուտները 1949 թվականին, 1948 թվականի համեմատությամբ, բարձրացան 14 տոկոսով, իսկ 1940 թվականի համեմատությամբ՝ 30 տոկոսով։

✪ 1950 թվականի մարտի 1-ին անցկացվեց պարենային և արդյունաբերական ապրանքների պետական մանրածախ գների նոր՝ թվով երրորդ իջեցումը։ Գների երրորդ իջեցումից բնակչությունը շահեց տարեկան 110 միլիարդ ռուբլի, որի հետևանքով ավելի բարձրացավ սովետական մարդկանց նյութական բարեկեցությունը։ Բանվորների, ծառայողների և գյուղա-

ցինների եկամուտները 1950 թվականին, 1949 թվականի համեմատությամբ, ավելացան 19 տոկոսով։

✪ Ապրանքների պետական մանրածախ գների չորրորդ և հինգերորդ իջեցումով ավելի բարձրացավ քաղաքի և գյուղի բոլոր աշխատավորների ռեալ աշխատավարձը, բնակչությունը ստացավ տարեկան 50,5 միլիարդ ռուբլի օգուտ։ 1951 թվականին բանվորների և ծառայողների մեկ աշխատողին ընկնող ռեալ եկամուտները մոտավորապես 57 տոկոսով ավելի բարձր էին, քան նախապատերազմյան 1940 թվականին, իսկ գյուղացիների ռեալ եկամուտները ավելի բարձր էին մոտավորապես 60 տոկոսով։

✪ Շնորհիվ գների իջեցման ստալինյան քաղաքականության՝ Սովետական Միությունում վերջին հինգ տարիների ընթացքում մասսայական սպառման ապրանքների գներն իջել են 50 տոկոսով։ Այդ նշանակում է, որ սովետական սպառողը 1952 թվականին 50 ռուբլով կարող էր գնել այնքան ապրանք, որքան նա 1947 թվականին կգներ 100 ռուբլով։

✪ Մեր պարտիան և Սովետական կառավարությունը սկսած 1947 թվականից հետևողականորեն 6 անգամ անց են կացրել պարենային և արդյունաբերական ապրանքների պետական մանրածախ գների իջեցում, որի շնորհիվ Սովետական Միության բնակչությունը հարյուրավոր միլիարդ ռուբլի լրացուցիչ օգուտ է ստացել։ Միայն 1953 թվականի ապրիլի 1-ին անցկացված գների նոր՝ հետպատե-



րազմյան տարիներին թվով վեցերորդ, իջեցման շնորհիվ մեր երկրի բնակչությունը տարվա ընթացքում կստանա առնվազն 53 միլիարդ ռուբլի լրացուցիչ օգուտ։

✪ ՍՍՌՄ-ում տարեց-տարի ավելանում է արդյունաբերության և գյուղատնտեսության ապրանքների արտադրությունը՝ հասարակության անընդհատ աճող պահանջմունքների առավելագույն բավարարման համար։ Արդյունաբերության և գյուղատնտեսության արտադրության աճի և կատարելագործման նկատմամբ անդուլ հոգատարության հետ մեկտեղ մեր պարտիան և կառավարությունը բոլոր միջոցները ձեռք է առնում սովետական առևտրի հետագա ընդլայնման և բարելավման համար։

✪ Հետպատերազմյան տարիներին պետական և կոոպերատիվ առևտրի ապրանքաշրջանառությունն աճեց 2,9 անգամ և զգալիորեն գերազանցեց նախապատերազմյան մակարդակը։ Հինգերորդ հնգամյակի վերաբերյալ պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվները նախատեսում են պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառությունը, 1950 թվականի համեմատությամբ, ավելացնել մոտավորապես 70 տոկոսով։

✪ Սովետական աշխատավորների դրամական եկամուտները անընդհատ ավելանում են այն բազմազան արտոնությունների և վճարումների շնորհիվ, որ նրանք ստանում են պետությունից։ 1952 թվակա-

նի ընթացքում մեր երկրի աշխատավորությունը պետությունից արտոնությունների և զանազան վճարումների գծով ստացել է 129 միլիարդ ռուբլի, որը 88 միլիարդ 200 միլիոնով գերազանցում է նախապատերազմյան 1940 թվականի մակարդակը: Միայն հետպատերազմյան հնգամյակում բնակչությունը պետական փոխառությունների շահումներից ստացել է 17 միլիարդ ռուբլի:

1952 թվականին 2,8 միլիոն բանվորներ, ծառայողներ և կոլտնտեսականներ սանատորիաներում ու հանգստյան տներում հանգստացել են անվճար ուղեգրերով:

Բազմազավակ և միայնակ մայրերին տրվող նպաստները, բնակչության անվճար բժշկական օգնությունը, սովորողներին, ծերերին, հաշմանդամներին տրվող թոշակները և այլն փայլուն կերպով վկայում են Սովետական երկրի աշխատավորության նյութական բարեկեցության նկատմամբ պարտիայի և Սովետական պետության հոգատարությունը:

✪ Մեր երկրում սիստեմատիկաբար ավելանում են առողջապահության և լուսավորության վրա կատարվող ծախսերը: 1952 թվականին առողջապահության վրա կատարված ծախսերը կազմել են 27,7 միլիարդ ռուբլի, 1940 թվականի 11,2 միլիարդ ռուբլու դիմաց: ՍՍՌՄ-ում անընդհատ ընդլայնվում է բժշկական հիմնարկների, սանատորիաների, հանգստյան տների



ցանցը: Խիստ կերպով կրճատվել են հիվանդությունները և մահացությունը:

✪ Սովետական կարգը լայն հնարավորություն է ստեղծել աշխատավոր մասսաների լուսավորության և կուլտուրական մակարդակի բարձրացման համար: Շնորհիվ պարտիայի և կառավարության սիստեմատիկ հոգատարության, բնակչության կուլտուրական մակարդակը հասել է չտեսնված բարձրության: Միայն ժողովրդական լուսավորության վրա հետպատերազմյան հինգ տարիների ընթացքում ծախսվել է 258,9 միլիարդ ռուբլի: Մեր պետությունը ժողովրդական լուսավորության գծով յուրաքանչյուր բնակչի վրա հինգ տարվա ընթացքում ծախսել է 1000 ռուբլի, մինչդեռ ցարական կառավարությունը, օրինակ, 1913 թվականին յուրաքանչյուր բնակչի վրա ծախսում էր 80 կոպեկ: Ընդարձակվել է տարրական, յոթնամյա և միջնակարգ դպրոցների ցանցը: ՍՍՌՄ-ում բոլոր սովորողների թիվը կազմում է 57 միլիոն: ՍՍՌՄ-ի բոլոր ռեսպուբլիկաները դարձել են համատարած գրագիտության ռեսպուբլիկաներ: ՍՍՌՄ-ում գրադարանների թիվը հասնում է 368 հազարի՝ 830 միլիոն կտոր գրքային ֆոնդով:

✪ Սովետական մարդկանց նյութական բարեկեցության և կյանքի կուլտուրական մակարդակի հետագա բարձրացման համար մեծ հեռանկարներ է բացվում նոր հնգամյակում:

*Ստալինյան հինգերորդ հնգամյա պլանով նախատեսվում է ազգային եկամտի ավելացում՝ առնվազն 60 տոկոսով։ Բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձի բարձրացում, հաշվի առնելով մանրածախ գների իջեցումը, ոչ պակաս, քան 35 տոկոսով։*

*Կոլտնտեսականների դրամական և բնամթերային եկամուտների ավելացում ոչ պակաս, քան 40 տոկոսով։*

✪ *Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության կողմից մասսայական սպառման ապրանքների գների սիստեմատիկ իջեցման քաղաքականության կենսագործումը փայլուն կերպով վկայում է մեր Հայրենիքի ամրապնդվող հզորությունը։ Այդ հզորության հիմքը սովետական ժողովրդի անձնուրաց ստեղծարար աշխատանքն է։ Սովետական ժողովուրդը ստեղծագործական պաթոսով լցված, այսուհետև ևս կկրկնապատկի իր աշխատանքային հաջողությունները և մեր փառապանծ պարտիայի ղեկավարությամբ առաջ կընթանա դեպի կոմունիզմ՝ քաջ գիտենալով, որ աշխարհում չկան այնպիսի ուժեր, որոնք կարողանային կանգնեցնել սովետական հասարակության հաղթական առաջընթացը դեպի կոմունիզմ։*

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՄԱՅԻՍԻ ՄԵԿԸ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏՈՆՆ Է

*1. Մայիսի մեկը աշխատավորների միջազգային համերաշխության օրն է։*

*2. Սովետական ժողովուրդը Մայիսի մեկը տոնում է տնտեսական-քաղաքական հզոր վերելքի պայմաններում։*

*3. Ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները Մայիսի մեկը դիմավորում են սոցիալիստական շինարարության բնագավառում ձեռք բերած նորանոր հաջողություններով։*

*4. Սովետական Միությունը գլխավորում է սոցիալիզմի, խաղաղության և դեմոկրատիայի լագերը՝ երկարատև և կայուն խաղաղության համար մղվող պայքարում։*

*5. Սովետական ժողովուրդն արտադրական նորանոր նվաճումներով է դիմավորում աշխատավորների միջազգային համերաշխության օրը՝ Մայիսի մեկը։*

*6. Անձնվեր աշխատանքով է՛լ ավելի ամրապնդենք մեր սոցիալիստական Հայրենիքի տնտեսական, քաղաքական և ռազմական հզորությունը։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

1. Ի. Վ. ՍՏԱԼԻՆ, «Կեցցե՛ մայիսի մեկը», *Երկեր, հ. 2-րդ, էջ 257—263։*

2. Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— «Ճառ պարտիայի 19-րդ համագումարում», *Հայպետհրատ, 1952 թ.։*

3. Գ. ՄԱԼԵՆԿՈՎ— «Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին», *Հայպետհրատ, 1952 թ.։*

4. *1953 թվականի մարտի 9-ին, Մոսկվայում, Կարմիր հրապարակում տեղի ունեցած սգո-միտինգում*
ԸՆԿԵՐ Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎԻ ՃԱՌԸ.
ԸՆԿԵՐ Լ. Պ. ԲԵՐԻԱՅԻ ՃԱՌԸ.
ԸՆԿԵՐ Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎԻ ՃԱՌԸ։ *(«Ագիտատորի բլոկնոտ» № 5, 1953 թ.)*

---

Խմբագրի տեղակալ՝
Գ. ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆ

*ՎՖ 01722 Պատվեր № 389 Տիրաժ 10000*

---

*Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8, 1953 թ.։*